րեն ուղղուած հարցումներուն, ինչ մեղքեր ալ բարդէին իր վրայ :

— Ֆրանսա գտնուած ատեն ստորագրա՞ծ էք յայտարարութիւն մը որով յանձն կ՚առնէիք աշխատիլ Ազգ. Ապահովութեան համար: — Այո :

— Լրտեսական տեղեկագիրներ կը յանձնէի՞ք Փրակայի Ֆրանսական, անգլիական եւ ամերիկեան դեսպաններուն: — Այո՛ :

Այս առթիւ րսաւ թէ 1948ին ամերիկեան դեսպանը երբ յանձնարարած էր բանակցութիւններ կատարել Պ. Ֆոսթըր Տըլէսի հետ : (Այս այն Ամերիկացին է որ աւջի օր արտաքին նախարար նըշանակուեցաւ Այզընհաուըրի կողմէ):

Ցետոյ կարգով հարցաքննուեցան միւս ամբաստանեալները, որոնք «ինքնաբերաբար» խոստովանեցան իրենց յանցանքը:

Կարգ մը թերթեր կը գրեն թէ 14 ամբաստանեալներէն ինը Հրեաներ են եւ թէ կառավարութիւնը հակահրէական քաղաքականութիւն մը կը հետապնդէ, վարկաբեկելու համար Սիոնական շարժումը :

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԼԵՀԱՍՏԱՆ ԱԼ կառավարական փոփոխութիւն մը կատարեց, ամբողջովին յարմարելու համար Խ. Միութեան կարգուսարքին, ինչպէս Ռումանիա եւ Պուլկարիա: Մոսկուայէն ղրկուած մարեչալը, Ռոկոսովսկի, որ 1949ին ազգ. պաշտպանութեան նախարար նշանակուած էր, պիտի վարէ նաեւ փոխ-վարչապետութիւնը: Նախորդ վարչապետին տեղ նշանակուեցաւ Հանրապետութեան նախագահը, Պիէրութ: Հանրապետութեան նախագահութիւնը պիտի վարէ պետական խորհուրդ մը որ կը բաղկանայ 15 անդամներէ :

ՔՈՐԷԱՅԻ ԶԻՆԱԴԱԴԱՐԻ մասին աւելի յուսալից լուրեր կը հաղորդեն վերջին հեռագիրները: Անգլիոյ արտաքին նախարարը յետաձգեց իր մեկնումը, որպէսզի կարենայ Ազգաժողովին առջեւ պաշտպանել Հնդկաստանի բանաձեւը :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ նորընտիր նախագահը, Այզընհաուըր, երեք նախարարներ եւս նշանակեց : Ամէնքն ալ անհամբեր կը սպասեն Քորէա կատարելիք այցելութեան, յուսալով թէ կարելի պիտի ըլլայ դադրեցնել պատերազմը:

ԵԳԻՊՏՈՍԻ վարչապետը ազդարարութիւն մը ուղղեց, յայտնելով թէ կառավարութեան համբերութիւնը կը սպառեն անոնք որ սուտ լուրեր կը տարածեն: Խստորէն պիտի պատժուին վայրերան գրողները հեղինակները :

ԵՐԿՐԱՇԱՐԺԻ զօրաւոր ցնցում մը զգացուեցաւ Պոլսէն 55 մղոն հեռու :

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ զրոյց տարածուած էր թէ սպաննուած է գերման կուսակցութեան մէկ անդամը, Կեկէր, 70 տարեկան: Ցետոյ ճշդուեցաւ թէ յարձակում կրած է, բայց մահը հետեւանք է սրտի հիւանդութեան:— Պատ-Էմսի ազատական կուսակցութեան համագումարին մէջ դատական նախարարը բարձրաձայն յայտարարեց թէ Գերմանիա եւ Փրուսիա պէտք է անյապաղվերստանձնեն իրենց միջակոյթի առաքելութիւնը կեդր. Եւրոպայի մէջ: — Ընկերվարական առաջնորդն ալ ձայնասփիւռ ճառով մը յայտարարեց թէ Սարը գերմանական հող է :

65.000 ՀՐԵԱՆԵՐ աղերսագիր մը մատուցին հունգարական կառավարութեան, որպէսզի արտօնէ Իսրայէլ երթալու: 300.000 Հրեաներ կը գտնուին Հունգարիոյ եւ Ռումանիոյ մէջ:

«ՀԱՄԱԶԳԱՅԻՆ» ԳՐԱՏԱՆ ԳԻՐՔԵՐԸ

Այբբենարան՝ Լեւոն Շանթի 250 լիբ. դահեկան, Մանկական աշխարհ Ա. տարի 250 լիբ. դահեկան, Բ. տարի 250, Գ. տարի 300, Դ. տարի 300 լիբ. դահեկան :

Գրաւոր դասեր Ա., Բ., Գ, եւ Դ. 150ական, Հայրենի Աշխարհ Ա. գիրք 300, Բ. գիրք 350, Գ. գիրք 400, Դ. գիրք 400:

Քերականութիւն Ա. պրակ, Բ., Գ. եւ Դ. պրակ 200ական լիբ. դահեկան :

Բառակազմութիւն, հոլովում, խոնարհում

Թուաբանութիւն սկզբնական Ա. Յովհաննէսեանի 100, Ա. տարի 150, Բ. տարի 200, Գ. տարի 200 եւ Դ. տարի 300 լիբ. դահեկան:

Արեւմտահայ Արդի Գրականութիւն Կ. Սասունի, Գրական Գոհարներ, Կ. Սասունի, Պատմութիւն Միջնադար Արեւելքի եւ Հայաստանի Գ. Գիւզալեանի :

Մեծաքանակի համար հարիւրին 15 զեղչ :

Կը վաճառուին նաեւ Երան բառարան՝ անգլերէնէ հայերէն եւ հայերէնէ անգլերէն, «Իմ Յուշերը» Ա. եւ Բ. հատոր Վահան Փափազեանի, «Գէորգ Մարզպետունի» Մուրացանի, «Խնդալով» Ց. Պարոնեանի, «Պապ Թագաւոր» Ս. Զօրեանի, «1915 Թուականը» Մինախորեանի, «Ապրուած օրեր» Արմէն Գարոյի :

Դիմել Հ. Սամուէլ գրատուն :

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ
ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Տեղի կ՚ունենայ **30** Նոյեմբեր
կիրակի, ժամը **16 — 24**

HOTEL GEORGE Vի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ
Նախագահութեամբ՝
ՊԱՐՈՆ ԳԱՐԼՕ ՍԻՐԱՔԵԱՆԻ

Défilé des mannequins — Maggy Rouf, Mendel
**Attractions, 2** Օրքէստր

Խճողումի եւ դժուարութեանց տեղի չտալու համար կը խնդրուի նախապէս ապահովել տոմսակները եւ սեղանները, դիմելով՝

Պ. Արմենակ Աճէմեանի, 56 rue Lafayette, Tél. PRO. 03-19:

Պ. Վահէ Զիլինկիրեանի, 24, rue Feydeau, Tél. CEN. 48-51:

Պ. Նուպար Յովհաննէսեանի, 14 rue Rochambeau, Tél. TRU. 47-48:

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ Սերովբէ Շիրինեան, հօրը անունը Զաքար, մօրը՝ Արմաւենի (Զառացի) : Կը կարծուի թէ Լիոն կը գտնուի: Տեղեկացնել իր քրոջ աղջկան Մարիամի Filor Uçaf Bayazit Suanaga mahalesi Schoban Basi sokak 20, Istanbul (Turquie):

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՓՍԱԿԻ.— Տիկին Մուրատ Պօյաճեան, Տիգրան պէյ Զայեանի մահուան առթիւ 2000 Ֆր. կը նուիրէ Դպրոցասէր Տիկնանց վարժարանին, փոխան ծաղկեպսակի :

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԸՆՏԱՆԻՔԻՆ ԳԻՐՔԸ

Որ կը պարունակէ 1) ԵՐԱԶԱՀԱՆ, 3000է աւելի երազներու մեկնութիւն, վիճակացոյց-բախտացոյց: 2) ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՈՀԱՆՈՑ, զանազան կերակուրներու, անուշեղէններու եւն. տեսակներ : 3) ԸՆՏԱՆԵԿԱՆ ԶԲՕՍԱՆՔ, ժամանցի խաղեր եւ կախարդական աճպարարութիւններ: 4) ԸՆՏԱՆԵԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԻՒՆ:

640 էջնոց ստուար հատոր մը, անհրաժեշտ ամէն ընտանիքի:

Գին 1000 Ֆրանք, առաքման ծախքով 1100 Ֆր.:
LIBRAIRIE HRAND SAMUELIAN, 51, rue Mousieur le Prince, Paris (6). Chèque Postal: Paris: 1278-35:

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ Հերոսամարտին 38րդ տարեդարձը Փարիզի մէջ, Կիրակի 10 Մայիս, 1953 :




**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ

Կիրակի 30 Նոյեմբեր, ժամը 10.30ին ԳԵՐԱՊԱՅԾԱՌ Թ. Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ կը պատարագէ Enghienի Ֆրանսական St. Joseph եկեղեցին :
Կը հրաւիրուի հասարակութիւնը :

ԵՐԳԱՀԱՆԴԷՍ
ՕՐ. ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ (ԻԶՔԱԼԱՅԵԱՆ)
Փետրուար 20, 1953ին:
Կը խնդրուի նկատի ունենալ :



ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ
ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, **30** Նոյեմբեր, ժամը **15**էն **24, Salle des Fêtes, Rue Voltaire**

Պատուոյ նախագահութեամբ՝ R. BLEUSEի

U. J. A.ի Promotion d'Honneurի բարձրացման առթիւ կնքահայրութեամբ JACQUES HÉLIANի

Cabaret Le Jockeyի ամբողջական յայտագիրը :

Հայկական գեղարուեստական բաժին, Վարդիվանեան իր նուագախումբով (Ֆրանսական ձայնասփիւռէն) :

Հաղորդակցութիւն. — Մեթրօ Charenton Ecoles l'Union:

մէջ կ'ուսանին 244 աշակերտ որոնցմէ 122ը Պաշ-քալէի վարժարանին մէջ :

Հրեայ գաղութի մասին.— Չէինք յուսար թէ այս հեռաւոր քաղաքին մէջ կը հանդիպինք Հրեաներու :

Ա. Ընդհ. պատերազմէն առաջ երբ գաղթական Պարսկաստանէն եկած, հաստատուած են եւ կը զբաղին առեւտուրով :

Առօրեայ յարաբերութիւններու ընթացքին կը գործածեն Թուրքերէն լեզուն զոր կը խօսին լաւ տառադանութեամբ : Եբրայեցերէնը կը գործածուի ընտանեկան կեանքի մէջ: Ունին սինակոկ մը եւ մէկ խախամ: Անոնք լաւագոյնս յարմարած են իրենց միջավայրին եւ ընդգրկած են տեղական բարքերը :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Ովսաննա Քիլէճեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, յետ պատարագի, Փարիզի Հայոց եկեղեցին, իրենց ամուսնոյն եւ հօր ողբացեալ ԳԷՈՐԳ ՔԻԼԷՃԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ:Կը հրաւիրուին յիշատակը յարգողները :

ԴԱՄԱՍԿՈՍԷՆ նամակ ունի Պ. Յակոբ Այվազեան (կափամարտիկ) :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Մ. Մ.ի տարեկան պարահանդէսը Դեկտ. 28ին :







## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՋԵՐՄԱՊԷՍ ԿԸ ԽՆԴՐԵՆՔ ՄԵՐ ՓԱՐԻԶԻ ԵՒ ՄԱՐՍԷՅԼԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԷՆ ՈՐ ԱՆՅԱՊԱՂ ՊԱՏԱՍԽԱՆԵՆ ԻՐԵՆՑ ՂՐԿՈՒԱԾ MANDAT-CARTEԵՐՈՒՆ, ԴԻՒՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸ :

ԱՅՍ ԱՌԹԻՒ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԿԸ ՅԱՅՏՆԵՆՔ ԲՈԼՈՐ ԱՆՈՆՑ ՈՐ ԱՐԴԷՆ ՓԱԿԱԾ ԵՆ ԻՐԵՆՑ ՀԱՇԻՒՆԵՐԸ: ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՀԱՒԱՔՈՅԹ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԸՆԿԵՐՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ ընկեր ՌՈՒԲԷՆ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆԻ մահուան առաջին տարելիցին առթիւ Պէլվիլի Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբը կազմակերպած է այց մը: Pére Lachaiseի գերեզմանատունը, այս կիր. ժամը ճիշդ 3ին: Այս առթիւ պիտի այցելեն նաեւ Ախարոնեանի, Խատիսեանի, Անդրանիկի գերեզմանները :

Այցելութենէն վերջ ժամը 4—6, մասնաւոր հաւաքոյթ Le Khideve սրճարանի սրահին մէջ, 9 Place Gambetta, métro Pére Lachaise :

Հաւաքոյթի ընթացքին յարգանքի խօսք՝ ողբացեալ ընկերներու մասին :

Սիրով կը հրաւիրուին Փարիզի եւ շրջանի՝ ընկերներն ու համակիրները :

Ծախքերու մասնակցութիւն :

Հաւաքավայր Gambettaի մեծ դրան առջեւ :

ԼԻՈՆ.— Այրի Տիկ. Վերժին Գարանֆիլեան (Լիոն), Օր. Ալիս Գարանֆիլեան (Լիոն), Տէր եւ Տիկ. Պետրոս Գարանֆիլեան եւ զաւակները (Ամերիկա), Տէր եւ Տիկ. Մկրտիչ Գարանֆիլեան եւ զաւակները (Ամերիկա), Տոքթ. Թոնամեան եւ զաւակները (Լիոն), Պ. Պ. Տիգրան, Խորէն եւ Յարութիւն Թոնամեան եւ զաւակներր (Ամերիկա), Պ. Նշան Ֆուրունճեան (Լիոն), Այրի Տիկ. Թօմա եւ Օր. Լուսի Ֆուրունճեան (Լիոն), Տիկին Կատար Ֆրունճեան եւ զաւակները (Հալէպ), սրտի դառն կսկիծով կը ծանուցանեն դառնաղէտ մահը՝ իրենց ամուսնոյն, հօր, եւ ազգականին

### Պ. ՄԻՀՐԱՆ ԳԱՐԱՆՖԻԼԵԱՆԻ
(Տիգրանակերտցի)

որ տեղի ունեցաւ, երեքշաբթի գիշեր, 25 Նոյեմբեր, 73 rue Eugène Pons, իր բնակարանը, Լիոն, 4e. Croix Rousse:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի, այսօր ուրբաթ, 28 Նոյեմբեր, առաւօտ ժամը 10-ին, St. Eucherի եկեղեցին: Ժամը 10.30ին, մարմինը պիտի թաղուի իր ընտանեկան դամբարանը, Քրուա Ռուսի Նոր գերեզմանատունը :

Մասնաւոր մահագդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայ իբր այդ ընդունիլ :

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ
## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Տեղի կ'ունենայ **30** Նոյեմբեր

Կիրակի, ժամը **16 — 24**

HOTEL GEORGE Vի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Նախագահութեամբ՝

ՊԱՐՈՆ ԳԱՐԼՕ ՍԻՐԱՔԵԱՆԻ

Défilé des mannequins — Maggy Rouf, Mendel

**Attractions, 2** Օրքէսթր

Խճողումի եւ դժուարութեանց տեղի չտալու համար կը խնդրուի նախապէս ապահովել տոմսակները եւ սեղանները, դիմելով՝

Պ. Արմենակ Աճէմեանի, 56 rue Lafayette, Tél. PRO. 03-19:

Պ. Վահէ Զիլինկիրեանի, 24, rue Feydeau, Tél. CEN. 48-51:

Պ. Նուպար Յովհաննէսեանի, 14 rue Rocham-beau, Tél. TRU. 47-48:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Սեւակ» խումբի ժողովը այս ուրբաթ ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեօ Քաջանի տարեկան պարահանդէսը, կիրակի ժամը 15ին, Դեկտ. 28, Պուռ Լա Րէն :

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէն (Անիէռ) իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Պետրոս Զպուքճեանի իր կնոջ մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի 1000 ֆր. կը նուիրէ Հ. Յ. Դ. Տան հիմնադրամին :

Ստանալ «Յառաջ»էն :

× Տէր եւ Տիկ. Միհրդատ Ալիքսանեան 500 ֆր. կը նուիրեն Ֆ. Կ. Խաչի Իթալիի մասնաճիւղին, ողբացեալ Պ. Յակոբ Ֆէրմանեանի դառնաղէտ մահուան առթիւ :

Ստանալ «Յառաջ»էն:

ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՅՈՒՆՈՒԱՐ 11ԻՆ








ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Վստահելի եւ լուրջ հայրենակից մը գործ կը փնտռէ որեւէ հաստատութեան կամ խանութի մը մէջ, իբրեւ գիշերապահ կամ ցորեկուան դռնապան: Պատրաստ է ի հարկին քուրս ընելու:

Դիմել «Յառաջ»ի միջոցաւ (Գ. Մ.):


**Le Gérant : A. NERCESSIAN**

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ
## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, **30** Նոյեմբեր, ժամը **15էն 24, Salle des Fêtes, Rue Voltaire**

Պատուոյ նախագահութեամբ՝ R. BLEUSEի

U. J. A.ի Promotion d'Honneurի բարձրացման առթիւ կնքահայրութեամբ JACQUES HÉLIANի

Cabaret Le Jockeyի ամբողջական յայտագիրը :

Հայկական գեղարուեստական բաժին, Վարդիվանեան իր նուագախումբով (ֆրանսական ճայնասփիւռէն) :

Հաղորդակցութիւն. — Մեթրօ Charenton Ecoles l'Union:

9) Օթթօ Սլինկ, 40 տարեկան, Հրեայ, որ կը մեղադրուէր իբրեւ լիրբ եւ պարծենկոտ :

10) Զօր. Քարել Շուապ, երբեմն փոխանորդ Ապահովութեան եւ պետ գաղտնի ոստիկանու-թեան:

11) Պետրիխ Ռեյին, 41, Հրեայ, 1943ին զին-ւոր Ռուսիոյ մէջ, փոխ-նախարար իր երկրին մէջ: Ինքն էր որ վերջնագիր կ'ուղղէր Պենէշի, 1948ին :

Միւս երեքն ալ (ցկեանս), Հրեաներ են եւ կարեւոր դէմքեր:

## ՈՒՐԻՇ ԴԱՏԵ՞Ր ԱԼ

Ամենամեծ դատն է այս, վերին պատերազմէն ի վեր: 1949ին Ալպանիոյ մէջ հրացանի բռնեցին զօր. Քոչի Տոցէն: 1949 Սեպտեմբերին Հունգարիոյ մէջ կախեցին երեք երեւելիներ, որոնց մէկը նախարար Ռայք: 1950ին Սոֆիայի մէջ կախեցին ընդհ. քարտուղարը, Թրայքօ Քոսթով, (հինգ հոգի ալ 8—15 տարի բանտ) :

Կը կարծուի թէ մօտերս պիտի դատուին երբեմնի կուռքը, Տիկին Աննա Փաուքըր եւ ուրիշներ (Պուքրէշ), ինչպէս եւ լեհ երեւելիներ :

Տրուած վճիռներէն կը հետեւի թէ հետապնդումները պիտի շարունակուին :

## Թուրքիոյ նախագահը Աթէնքի մէջ

Ինչպէս գրած էինք երէկ, Եչ. օր Աթէնք հասաւ Թուրքիոյ նախագահը, Ճէլալ Պայար : Շքեղ հանդիսութիւններ սարքուած են ի պատիւ հիւրին որ Աթէնքի պատուակալ քաղաքացի հռչակուեցաւ: Պիտի այցելէ Հին Կորնթոս եւ ուրիշ գեղեցիկ վայրեր: Ջերմ ընդունելութիւն մը պիտի գտնէ Սելանիկի եւ Սերէզի մէջ ալ, անձամբ տեսնելով Յունաստանի զինեալ ուժերը :

Քոմոթինիի մէջ (Կիւմիւլճինա) պիտի բացուի ճեմարան մը՝ Ճ. Պայարի անունով :

Աթէնքի թերթերը ջերմապէս ողջունելով հիւրը, կը չեշտեն երկու երկիրներուն գործակցութիւնը՝ ամէն գետնի վրայ : Թէեւ շատ մը խնդիրներ լուծման կը սպասեն, բայց երկու երկիրներու մէջ ալ գոհ են սերտ գործակցութենէն:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՔՈՐԷԱՑԻ ԶԻՆԱԴԱԴԱՐԻ մասին խօսելով երեսփ. ժողովին մէջ, Պ. Իտըն ըսաւ թէ Խ. Միութիւնը միշտ խոչընդոտներ կը հանէ: Իր կարծիքով, Խ. Միութիւնը տեղի չի տար որովհետեւ Չինացիներն են որ կը կռուին ի շահ իրեն :

ՄԱԼԱԹԻՈՅ ՄԱՀԱՓՈՐՁԻՆ առթիւ, որ ուղղուած էր Թուրք խմբագիր Ա. Եալմանի դէմ, վերջին լուրերը կ'ըսեն թէ կրօնամոլութիւնը կ'աճի եւ ուրիշ դէպքեր պիտի պատահին: Թուրք խմբագիրը մահուան դատապարտուած էր Ըլազիկի մէջ (Խարբերդ), 16 հոգինոց ժողովի մը կողմէ: Զէնքը ճարած է երեւելի մը : Մեծ յուզում կը տիրէ երկրին մէջ :

ԶԵՐԲԱԿԱՈՒԵՑԱՒ արեւել. Գերմանիոյ մէջ, նախկին երեւելի մը, Մերքեր, իբրեւ մեղսակից - լրտես :

ՓԱՐԻԶԻ ԼԵՀԱԿԱՆ երկու թերթերը արգիլուեցան ոստիկանութեան կողմէ: Լեհերը կը բողոքեն այս արգելքին դէմ :

ՓԱՐԻԶԻ Քաղաքապետ. խորհուրդին նախորդ նախագահը, Փոլ Քուառ, որ վտարուած էր զօր. տը Կոլի կողմէ, ծեծ կերաւ առջի օր, երբ կը փորձէր ճառ մը խօսիլ: Ծեծողներն ալ զօր. տը Կոլի կուսակիցներ էին :

ՄԱՐՈՔԻ ԵՒ ԹՈՒՆՈՒԶԻ խնդիրները պիտի քննուին ՄԱԿի Քաղաք. Յանձնախումբին մէջ, ինչպէս կը հեռագրեն Նիւ Եորքէն :

ՍԹԱԼԻՆԻ տղան ծանրապէս վիրաւորուած է Թուրքէի մը պահուն, կը գրէ անգլ. թերթ մը :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Ովսաննա Քիլէճեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, յետ պատարագի, Փարիզի Հայոց եկեղեցին, իրենց ամուսնոյն եւ հօր ողբացեալ ԳԷՈՐԳ ՔԻԼԷՃԵԱՆի մահուան քառասունքին առթիւ :Կը հրաւիրուին յիշատակը յարգողները :

### ՏԽՐՈՒՆԻ

ՄԱՐՍԷՅԼ.— Տարօն Սալնոյ Ձորի Հայր. Միութիւնը իր ցաւակցութիւնները կը յայտնէ հայրենակից Առաքել Յովհաննէսեանի մահուան առթիւ (Վիէն) հանգուցեալի զաւակներուն, Տէր եւ Տիկին Ղազար Կարապետեանի եւ բոլոր պարագաներուն: Հանգուցեալը ծնած էր Տարօն Պուլանուխի գաւառի Թեղուտ գիւղը, 1915ի Հայ Կամաւորական գունդերուն մէջ կատարած իր հայրենասիրական պարտականութիւնը: Հայաստանի խորհրդայնացումէն վերջ կ'անցնի արտասահման ուր Վիէնի մէջ կը կնքէ իր մահկանացուն: (Կնիք)

### ՀԱՒԱՔՈՅԹ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԸՆԿԵՐՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ ընկեր ՌՈՒԲԷՆ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆի մահուան առաջին տարելիցին առթիւ Պէլվիլի Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբը կազմակերպած է այց մը: Pére Lachaiseի գերեզմանատունը, այս կիր. ժամը ճիշդ 3ին: Այս առթիւ պիտի այցելեն նաեւ Ախարոնեանի, Խատիսեանի, Անդրանիկի գերեզմանները :

Այցելութենէն վերջ ժամը 4—6, մասնաւոր հաւաքոյթ Le Khideve սրճարանի սրահին մէջ, 9 Place Gambetta, métro Pére Lachaise :

Հաւաքոյթի ընթացքին յարգանքի խօսք՝ ողբացեալ ընկերներու մասին :

Սիրով կը հրաւիրուին Փարիզի եւ շրջանի՝ ընկերներն ու համակիրները :

Ծախքերու մասնակցութիւն :

Հաւաքավայր Gambettaի մեծ դրան առջեւ :



ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Մարսէյլէն Պ. Քոճակէօզեան իր զոքանչին՝ Տիկին Լուսին Աբեղեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 1000 Ֆր. կը նուիրէ Այնճարի «Յառաջ» վարժարանին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Դեկտ. 24ին Հ. Յ. Դ. Պոմոնի Քրիստափոր խումբի ներկայացումը :



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ Քաչանի տարեկան պարահանդէսը, կիրակի ժամը 15ին, Դեկտ. 28, Պուռ Լա Րէն :

### ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ

Կիրակի 30 Նոյեմբեր, ժամը 10.30ին ԳԵՐԱ. ՊԱՑԾԱՌ Թ. Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ կը պատարագէ Enghienի ֆրանսական St. Joseph եկեղեցին :

Կը հրաւիրուի հասարակութիւնը :

Հաղորդակցութիւն՝ Gare du Nordէն 9.30ին կամ Porte Clignancourtէն 154 օթօպիւսը:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիկին Ազնիւ Զաւարեան կը ծանուցանէ թէ այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին յետ պատարագի, հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի :

ՍԻՄՈՆ ԶԱՒԱՐԵԱՆԻ

եւ համայն ընտանիքի ննջեցեալներու, ինչպէս նաեւ վերջերս Փրովիտանսի մէջ վախճանած իր հօրեղբօր որդւոյն՝ ԿՆԵԱԶ Մուխսի Մուրատեանի եւ Մուխսի Մուրատեան ընտանիքի ննջեցեալներու յիշատակին :

Կը խնդրուի իրենց յիշատակը յարգողներէն ներկայ ըլլալ :

ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՑՈՒՆՈՒԱՐ 11ԻՆ




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՈՒՐՔԻՈՅ, Յունաստանի եւ Եուկոսլաւիոյ միջեւ զինակցութիւն մը կը նախատեսուի, վերջին այցելութեանց շնորհիւ :

ԱՆԳԼԻՈՅ երեսփ. ժողովը օրինագիծ մը քուէարկեց որով կը ջնջուի պողպատի ազգայնացումը:

ՀԱՑԻՆ ԳԻՆԸ 1 — 2 փրանք պիտի իջնէ, շաքարն ալ՝ 2 փրանք, ինչպէս կը գրեն տեղական թերթերը :

ՈՂՈՂՈՒՄՆԵՐԸ մեծ աւերներ գործած են միջին Ֆրանսայի մէջ: Բազմաթիւ ընտանիքներ տեղափոխուած են Լիոնի եւ ուրիշ շրջաններու մէջ : Ռոնը եւ Սոնը յորդած են: Հոթ Սավուայի մէջ, ֆրանքեւզուիցերիական սահմանին վրայ, ջուրերը քանդած են կարեւոր ճամբայ մը: Կամուրջ մըն ալ քշուած է, խզելով Փարիզ - Էվիան գիծը :

ԵՐԿԱՄԵԱՅ զինուորութիւնը պիտի պահուի Անգլիոյ մէջ, ինչպէս յայտնեց զինուորական նախարարը:

ԵԳԻՊՏՈՍԻ մէջ նոր սահմանադրութիւն մը պիտի հաստատուի: 100 հոգինոց յանձնաժողով մը կազմուած է, խնդիրը քննելու համար :— Զօր. Նեկիպ կոչ մը ուղղեց, որպէսզի օգնեն չքաւորներուն :

36—39 ՀՈԳԻ զոհ գացին օդանաւային արկածի մը, Թաքոմայի մէջ (Ուաշինկթըն):

ՀՆԴԿԱՉԻՆԻ ֆրանս. ուժերը կրակ կը տեղան թշնամի դիրքերուն վրայ: Ըմբոստները գաղտնի ամրոցներ եւ փապուղիներ շինած են: Ժամէժամ կը սպասուի ընդհ. յարձակման :

ԱԶԳԱԺՈՂՈՎԻՆ մէկ յանձնախումբը առջի օր պիտի քննէր Պաղեստինի խնդիրը: Ոչ մէկը ուզեց խօսիլ եւ ժողովը յետաձգուեցաւ :

ԻՒՆԷՍՔՕՅԻ շէնքին կառուցման համար նոր գետին մը որոշուած է Փարիզի մէջ, զին. վարժարանին մօտ :

ԱՐԵՒԵԼ. ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ մրցում մը սարքուած է, փառաբանելու համար Ն. Մինութիւնը եւ Ստալինը: Նմոյշ մը,— «Ո՛վ որ կը սիրէ Ն. Միութիւնը եւ մեծ Ստալինը, ուրիշ ամէն բանէ առաջ, կրնայ իրապէս սիրել իր ազգը» :

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՋԵՐՄԱՊԷՍ ԿԸ ԽՆԴՐԵՆՔ ՄԵՐ ՓԱՐԻԶԻ ԵՒ ՄԱՐՍԷՅԼԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԷՆ ՈՐ ԱՆՅԱՊԱՂ ՊԱՏԱՍԽԱՆԵՆ ԻՐԵՆՑ ՂՐԿՈՒԱԾ MANDAT - CARTEԵՐՈՒՆ, ԴԻՒՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸ :

ԱՅՍ ԱՌԹԻՒ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԿԸ ՅԱՅՏՆԵՆՔ ԲՈԼՈՐ ԱՆՈՆՑ ՈՐ ԱՐԴԷՆ ՓԱԿԱԾ ԵՆ ԻՐԵՆՑ ՀԱՇԻՒՆԵՐԸ: ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Մ. Մ.ի տարեկան պարահանդէսը Դեկտ. 28ին :

ՔԱՆԻ ՄԸ ՕՐԻՆԱԿ ՈՒՆԻՆՔ ՄԻԱՅՆ
Մ. ԻՇԽԱՆԻ
« ԵՐԵՔ ՄԵԾ ՀԱՅԵՐ »էն
Գին 200 փրանք, Թղթատարի ծախքով 230 Ֆր. :
Դիմել «Յառաջ»ի վարչութեան :

ԵՐԳԱՀԱՆԴԷՍ
ՕՐ. ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ (ԻՉՔԱԼԱՑԵԱՆ)
Փետրուար 20, 1953ին:
Կը խնդրուի նկատի ունենալ :





## ՀԱՒԱՔՈՅԹ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԸՆԿԵՐՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ ընկեր ՌՈՒԲԷՆ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆԻ մահուան առաջին տարելիցին առթիւ Պէլվիլի Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբը կազմակերպած է այց մը: Pére Lachaiseի գերեզմանատունը, այս կիր. ժամը ճիշդ 3ին: Այս առթիւ պիտի այցելեն նաեւ Ախարոնեանի, Խատիսեանի, Անդրանիկի գերեզմանները :

Այցելութենէն վերջ ժամը 4—6, մասնաւոր հաւաքոյթ Le Khedive սրճարանի սրահին մէջ, 9 Place Gambetta, métro Pére Lachaise :

Հաւաքոյթի ընթացքին յարգանքի խօսք՝ ողբացեալ ընկերներու մասին :

Սիրով կը հրաւիրուին Փարիզի եւ շրջանի ընկերներն ու համակիրները :

Ծախքերու մասնակցութիւն :

Հաւաքավայր Gambettaի մեծ դրան առջեւ :

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Տեղի կ'ունենայ 30 Նոյեմբեր
Կիրակի, ժամը 16 — 24
HOTEL GEORGE Vի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ
Նախագահութեամբ՝
ՊԱՐՈՆ ԳԱՐԼՕ ՍԻՐԱՔԵԱՆԻ
Défilé des mannequins — Maggy Rouf, Mendel
**Attractions, 2** Օրքէստր

Խճողումի եւ դժուարութեանց տեղի չտալու համար կը խնդրուի նախապէս ապահովել տոմսակները եւ սեղանները, դիմելով՝

Պ. Արմենակ Աճէմեանի, 56 rue Lafayette, Tél. PRO. 03-19:

Պ. Վահէ Զիլինկիրեանի, 24, rue Feydeau, Tél. CEN. 48-51:

Պ. Նուպար Յովհաննէսեանի, 14 rue Rochambeau, Tél. TRU. 47-48:

ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
ՅՈՒՆՈՒԱՐ 11ԻՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Դեկտ. 24ին Հ. Յ. Դ. Պոմոնի Քրիստափոր խումբի ներկայացումը :




**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


Օր. ՇՈՒՇԱՆ ՔԱԼԱՐԵԱՆ
ԱՐԱ ՊԻՊԷՌԵԱՆ
Ամուսնացած
Կնքահայրութեամբ Պ. Վահրամ Զօրմիսեանի
23 Նոյեմբեր, 1952 Փարիզ

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբին դասախօսութիւնը այս հինգշաբթի ժամը 21.30ին Ազգ. տան մէջ 32 rue de Trévise: Կը խօսի ընկեր ՀՐԱՆՏ ԲԱԼՈՒԵԱՆ: Նիւթ՝ «Հայկական ճարտարապետութեան շրջանները »: Հայերէնի դասերը 20.15ին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ Քաջանի տարեկան պարահանդէսը, կիրակի ժամը 15ին, Դեկտ. 28, Պուռ Լա Րէն :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիկին Ազնիւ Զաւարեան կը ծանուցանէ թէ այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին յետ պատարագի, հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի :

ՍԻՄՈՆ ԶԱՒԱՐԵԱՆԻ

եւ համայն ընտանիքի ննջեցեալներու, ինչպէս նաեւ վերջերս Փրովիտանսի մէջ վախճանած իր հօրեղբօր որդւոյն՝ ԿՆԵԱԶ Մուխսի Մուրատեանի եւ Մուխսի Մուրատեան ընտանիքի ննջեցեալներու յիշատակին :

Կը խնդրուի իրենց յիշատակը յարգողներէն ներկայ ըլլալ :







## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

**Կիրակի, 30 Նոյեմբեր, ժամը 15էն 24, Salle des Fêtes, Rue Voltaire**

Պատուոյ նախագահութեամբ՝ R. BLEUSEի

U. J. A.ի Promotion d'Honneurի բարձրացման առթիւ կնքահայրութեամբ JACQUES HÉLIANի Cabaret Le Jockeyի ամբողջական յայտագիրը :

Հայկական գեղարուեստական բաժին, Վարդի վանեան իր նուագախումբով (Ֆրանսական ձայնասփիւռէն: Պիւֆէ մատչելի գիներով: Զանազան խաղեր:

Հաղորդակցութիւն.— Մեթրօ Charenton Ecoles էն առնել 103 թիւ օթօպիւսը եւ իջնել Rue de l'Union: